Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 20 ՆՈՅԵՄԲԵՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակը . . 3

ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի առթիվ 78

Խմբագրության հասցեն.—Երևան, Նալբանդյան 62, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։



## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 30-ԱՄՅԱԿԸ

Այս տարի սովետական ժողովուրդը նշում է փառապանծ հոբելյան— մեր երկրում Սովետական իշխանության գոյության 30-ամյակը։ Երեսուն տարի առաջ տեղի ունեցավ պատմության մեջ մեծագույն ռևոլյուցիան— Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան, որն սկիզբ դրեց նոր տիպի պետության՝ աշխարհում ամենադեմոկրատական Սովետական պետության գոյությանը, մարդկության պատմության մեջ բաց արեց մի նոր դարագլուխ՝ սոցիալիզմի դարագլուխը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձը նշանակալից տոն է Սովետական Միության բոլոր ժողովուրդների և ամբողջ առաջադեմ մարդկության համար։ Այս տարիների ընթացքում Սոցիալիզմի Երկրի անցած պայքարի և հաղ-

թանակների փառավոր ուղին ակնառու կերպով վկայում է, որ մեր Հայրենիքի հզորությունը, մեր Սովետական պետության անխորտակելի ուժը, որոնք ցայտուն կերպով դրսևորվեցին գերմանա-ֆաշիստական զավթիչների ու ճապոնական իմպերիալիստների դեմ Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմում, հիմնվում են այն մեծագույն նվաճումների վրա, որ սովետական ժողովուրդը Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ ձեռք է բերել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հետևանքով և ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի համար մղված հերոսական պայքարի տարիներին։

***

1917 թվականի Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո, որը Ռուսաստանում տապալեց ցարական ինքնակալությունը, բուրժուազիային հաջողվեց դավաճանական պարտիաների՝ մենշևիկների ու էսէռների օգնությամբ իր ձեռքը գցել իշխանությունը։ Ստեղծվեց բուրժուական Ժամանակավոր կառավարություն, որը կազմված էր կապիտալիստների և խոշոր կալ-



վածատերերի ներկայացուցիչներից։ Ժամանակավոր կառավարությունն իր գոյության առաջին օրերից ցույց տվեց, որ նա շահագործողների շահերի պաշտպանն է։ Նա վերջ չդրեց կողոպտիչ իմպերիալիստական պատերազմին, առաջվա նման գործարանները մնացին կապիտալիստների ձեռքում, հողը կալվածատերերի ձեռքում, իսկ աշխատավոր մասսաները չստացան ո՛չ խաղաղություն, ո՛չ հող, ո՛չ հաց, ո՛չ ազատություն, որի համար նրանք տարիներ շարունակ պայքարել և արյուն էին թափել։

Բուրժուական Ժամանակավոր կառավարության կողքին ռևոլյուցիայի հենց առաջին օրերին ծնունդ առան բանվորական և զինվորական դեպուտատների Սովետները — բանվոր դասակարգի և գյուղացիության դիկտատուրայի օրգանները, որոնք էլ հենց իսկական ժողովրդական իշխանությունն էին։ Երկրում ստեղծվեց երկիշխանություն՝ երբ իշխանությունը գտնվում էր միաժամանակ և բուրժուական Ժամանակավոր կառավարության և՛ բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետների ձեռքում։

Այս բարդ իրադրության մեջ հենց նոր

ընդհատակից դուրս եկած բոլշևիկների պարտիան, Լենինի և Ստալինի ղեկավարությամբ եռանդուն գործունեություն ծավալեց, աշխատավոր մասսաներին ցույց տալով պայքարի միակ ճիշտ ուղին։

1917 թվականի մարտի 12-ին Տուրուխանյան աքսորից Պետրոգրադ վերադարձավ ընկեր Ստալինը, որն անմիջապես գլխավորեց պարտիայի և նրա կենտրոնական օրգան «Պրավդա»-ի աշխատանքը։ Նա հանդես եկավ մի շարք հոդվածներով՝ սանեղծված իրադրության մեջ Սովետների դերի մասին, շարունակվող պատերազմի բնույթի մասին, կոչ անելով ամրապնդել Սովետները, մերկացնելով Ժամանակավոր կառավարության իմպերիալիստական քաղաքականությունը։

Մի քանի օրից հետո, ապրիլի 3-ին, երկարատև տարագրությունից Պետրոգրադ վերադարձավ Վ. Ի. Լենինը։ Հենց հաջորդ օրը Լենինը հանդես եկավ իր հռչակավոր Ապրիլյան թեզիսներով։ Այդ թեզիսների մեջ Լենինը բացահայտեց Ժամանակավոր կառավարության իմպերիալիստական քաղաքականությունը, ցույց տվեց, որ նա չի հոգում աշխատավորների կենսական պահանջները



ապահովելու մասին, որ նա աշխատավորներին չի տա ոչ խաղաղություն, ոչ հաց և ոչ էլ ազատություն։ «Ո՛չ մի աջակցություն ժամանակավոր կառավարությանը»,— գըրում էր Լենինը։

Լենինն ասում էր, որ անհրաժեշտ է համբերատար կերպով պարզաբանել աշխատավորներին Սովետների դերը իբրև ապագա իշխանության օրգանների, և որ անհրաժեշտ է ամեն կերպ ամրապնդել այդ Սովետները։ Դրանով իսկ Լենինը բնորոշեց Սովետները իբրև պրոլետարիատի դիկտատուրայի օրգաններ, իբրև նրա պետական իշխանության ձևը։ Լենինն այդ թեզիսների մեջ տվեց տեսականորեն հիմնավորված կոնկրետ պըլան, որով պետք է սկսվեր անցումը բուրժուա-դեմոկրատական ռևոլուցիայից սոցիալիստական ռևոլուցիային, պայքարը Սովետների ռեսպուբլիկայի համար։

Լենինի թեզիսները, որոնք ընդունվեցին բոլշևիկների Ապրիլյան կոնֆերանսի կողմից, դառնում են պարտիայի գործողության ծրագիրը։ Իրադարձությունների ընթացքը ցույց տվեց բոլշևիկների քաղաքականության լիակատար ճշտությունը։

1917 թվականի ապրիլին Ժամանակավոր կառավարությունը պաշտոնապես հավաստիացրեց Անգլիայի ու Ֆրանսիայի կառավարություններին, որ ինքը կշարունակի ցարի սկսած զավթողական պատերազմը և կըկատարի իր դաշնակցային պարտավորությունները։

Պատերազմից հոգնած ժողովրդական մասսաները, որոնք խաղաղություն էին ցանկանում և անասելի զրկանքներ էին կրում տնտեսական փլուզման հետևանքով, դեմ դուրս եկան Ժամանակավոր կառավարության այդպիսի քաղաքականությանը։ Սկսվեցին բողոքի ցույցերը։

1917 թվականի հունիսին Ժամանակավոր կառավարությունը անգլո-ֆրանսիական իմպերիալիստների կամքով սկսեց հարձակումը ռազմաճակատում։ Հոգնատանջ ու սոված աշխատավորական մասսաները հունիսի 18-ին Պետրոգրադում բազմահազար ցույց կազմակերպեցին բոլշևիկյան լոզունգներով, ընդդեմ պատերազմի։

Ռազմաճակատում պարտությունը կրելուց հետո զայրույթի նոր ալիք բարձրացրեց։ Հուլիսի 3-ին մայրաքաղաքում տեղի ունե-



ցան աշխատավորների խաղաղ ցույցեր որոնց դեմ, սակայն Ժամանակավոր կառավարությունը զորք դուրս բերեց, որպեսզի զինված ուժի օգնությամբ խեղդեր ռևոլյուցիոն շարժումը և հաստատեր իր դիկտատուրան։

Հուլիսյան արյունահեղ իրադարձությունները վերջնականապես մերկացրին Ժամանակավոր կառավարության հակաժողովրդական բնույթը և էսեռա-մենշևիկյան Սովետների դավաճանական դերը։ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը ժամանակավորապես հերթից հանվեց։ Ռեակցիան հաղթանակ տարավ։ Իշխանությունը վերջնականապես անցավ Ժամանակավոր կառավարության ձեռքը։ Երկիշխանությունը վերջացավ։ Բոլշևիկների պարտիան փոխեց իր տակտիկան, նա անցավ ընդհատակ։ Ժամանակավոր կառավարությունը հրաման տվեց Լենինի ձերբակալության մասին, և պարտիայի առաջնորդը ստիպված էր նորից անցնել ընդհատակի։

Այսպիսի պայմաններում 1917 թվականի հուլիս-օգոստոսին անլեգալ կերպով տեղի ունեցավ պարտիայի 6-րդ համագումարը։

Լենինը Համագումարից բացակայում էր։ Համագումարի աշխատանքները ղեկավարում էր ընկեր Ստալինը, որը Համագումարում տվեց երկու հիմնական զեկուցումներ— Կենտկոմի քաղաքական հաշվետվությունը և զեկուցում քաղաքական իրադրության մասին։ Ընկեր Ստալինը նշեց, որ ռևոլյուցիայի խաղաղ ժամանակաշրջանը վերջացել է, սկսվել է ոչ խաղաղ ժամանակաշրջանը, գոտեմարտերի և պայթյունների ժամանակաշրջանը։

Հանդես գալով Տրոցկու, Պրեոբրաժենսկու, Բուխարինի և ուրիշների դեմ, որոնք չէին հավատում մեր երկրում ռևոլյուցիայի հաղթանակի հնարավորությանը, և անում էին ամեն ինչ ձախողելու նախապատրաստվող սոցիալիստական ռևոլյուցիան, ընկեր Ստալինը Համագումարում հայտարարեց. «Բացառված չէ այն հնարավորությունը, որ հենց Ռուսաստանը հանդիսանա սոցիալիզմի ուղին հարթող երկիրը... Պետք է դեն շպրտել այն հնացած պատկերացումը, թե միայն Եվրոպան կարող է ուղի ցույց տալ մեզ։ Գոյություն ունի դոգմատիկ մարքսիզմ և ստեղծագործական մարքսիզմ։ Ես կանգնած եմ



վերջինիս հողի վրա»։ (Ստալին, Երկ. հատ. 3-րդ, էջ 186—187)։ Ստալինի խոսքերը մարգարեական էին. Ռուսաստանն առաջինը ցույց տվեց սոցիալիզմի ուղին։

Համագումարի բոլոր որոշումներն ուղղված էին պրոլետարիատին և չքավոր գյուղացիությանը զինված ապստամբության նախապատրաստելու նպատակին։ Վեցերորդ Համագումարը պարտիայի նպատակակետը դարձրեց զինված ապստամբությունը, սոցիալիստական ռևոլյուցիան։

Սակայն գործում էր և կոնտրռևոլյուցիան։ Նա ուզում է երկրում հաստատել ռազմական դիկտատուրա, խեղդել ռևոլյուցիան։ Իբրև դիկտատորի հարմար թեկնածու, բուրժուազիան առաջադրեց ցարական գեներալ Կոռնիլովին։ Նա պետք է իրեն հավատարիմ զորքերով շարժվեր դեպի Պետրոգրադ, գրավեր մայրաքաղաքը, ռազմական դիկտատուրա հաստատեր և դատաստան տեսներ երկրում ծավալված ռևոլյուցիոն շարժման հետ։

Օգոստոսի վերջերին Կոռնիլովի կոնտրռևոլյուցիոն զորքերը մոտեցան Պետրոգրադին։Պարտիայի կոչով ոտքի ելան բանվոր-

ներն ու ռևոլյուցիոն զինվորները։ Կոռնիլովի դավադրությունը չհաջողվեց։ Բոլշևիկների պարտիան կազմակերպեց կոռնիլովականների ջախջախումը, դրանից հետո մասսաների մեջ ավելի քան աճեց պարտիայի հեղինակությունը։

Սեպտեմբերին բոլշևիկներն արդեն մեծամասնություն նվաճեցին Սովետներում։ Ամբողջ երկրում աճում էր ռևոլյուցիոն շարժումը։ Այս պայմաններում պարտիան նորից առաջ է քաշում «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը, մասսաներին մոբիլիզացիայի է ենթարկում այդ լոզունգի շուրջը։

Լենինը, որ այդ ժամանակ թաքնված էր սկզբում Ռազլիվ կայարանի մոտ, իսկ այնուհետև Ֆինլանդիայում, գրում է իր նշանավոր նամակները զինված ապստամբության անհրաժեշտության մասին։

Եվ պարտիան պատրաստվում էր զինված ապստամբության։

Հոկտեմբերի 7-ին Լենինը անլեգալ կերպով եկավ Պետրոգրադ։ Հոկտեմբերի 10-ին և 16-ին նրա ղեկավարությամբ տեղի ունեցան Կենտկոմի պատմական նիստերը, որ-



տեղ կոնկրետ որոշումներ ընդունվեցին զինված ապստամբության մասին և ստեղծվեց ապստամբությունը ղեկավարող Պարտիական կենտրոն՝ ընկեր Ստալինի գլխավորությամբ։

Դավաճաններ Կամենևը և Զինովևը, որ համաձայն չէին այդ որոշումներին, մենշևիկյան թերթում հրապարակեցին պարտիայի գաղտնիքը, իսկ Տրոցկին հայտնեց ապստամբության մոտավոր օրը։

Կերենսկու կառավարությունը, նախազգուշացված լինելով, ռազմաճակատից ուժեր էր փոխադրում որպեսզի վաղօրոք ճնշեր նախապատրաստվող ապստամբությունը։

Ռևոլյուցիայի առաջնորդ Լենինը պահանջեց իշխանությունը գրավել Հոկտեմբերի 25-ին, քանի դեռ չէին հասել Կերենսկու կոնտրռևոլյուցիոն զորքերը։

Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեի ղեկավարությամբ, որին գլխավորում էր ընկեր Ստալինը, 1917 թվականի Հոկտեմբերի 24-ին ընկրկվեց զինված ապստամբությունը։

Հոկտեմբերի 25-ի երեկոյան դեմ ապըստամբած բանվորները, զինվորներն ու նավաստիները գրավեցին իշխանությունը Պետ-

տրոգրադում։ Միայն Ձմեռային պալատում դեռ պահպանվում էր Ժամանակավոր կառավարությունը։

Հոկտեմբերի 25-ի (Նոյեմբերի 7-ի) երեկոյան ժամը 10-ից 45 րոպե անց, Սմոլնիում բացվեց Սովետների Համառուսաստանյան երկրորդ համագումարը։ Նույն միջոցին շարունակվում էր գրոհը Ձմեռային պալատի դեմ։ Հոկտեմբերի լույս 26-ի (Նոյեմբերի 8-ի) գիշերվա ժամը 2-ից 10 րոպե անց Ձմեռային պալատը գրավվեց և Ժամանակավոր կառավարությունը ձերբակալվեց։

Իսկ հոկտեմբերի 26-ի (Նոյեմբերի 8-ի) առավոտյան ժամը 5-ին համագումարը պատմական որոշում ընդունեց ամբողջ իշխանությունը Սովետներին անցնելու մասին։ Այնուհետև ընդունվեցին պատմական դեկրետները խաղաղության մասին, հողի մասին, առաջին Սովետական կառավարությունը կազմելու մասին՝ Լենինի և Ստալինի գլխավորությամբ։

Այսպես հաղթեց Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլուցիան Պետրոգրադում։

Պետրոգրադի պրոլետարիատի հաղթանակի լուրը արագորեն տարածվեց ամբողջ երկրում։ Մի շարք քաղաքներում բանվորները



կատաղի մարտեր էին մղում իշխանությունը բուրժուազիայի ձեռքից խլելու համար։ Հետագա օրերի ու շաբաթների ընթացքում ռեվոլուցիան հաղթեց ամբողջ երկրում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլուցիան գլխավորում էր ռուսական պրոլետարիատը, նա ուներ այնպիսի լուրջ դաշնակից, ինչպես գյուղացիական չքավորությունը, որը գյուղական բնակչության հսկայական մեծամասնությունն էր կազմում։ Բանվոր դասակարգի գլուխ կանգնած էր քաղաքական մարտերում կոփված պարտիան՝ բոլշևիկների պարտիան, որը կարողացավ մերկացնել մենշևիկների ու էսեռների համաձայնողական պարտիաներին, նրանց մեկուսացնել մասսայից և մասսաներին կազմակերպել ու գրոհի տանել ընդդեմ բուրժուազիայի իշխանության։

Հոկտեմբերյան ռևոլուցիան ոչնչացրեց հողի, ֆաբրիկաների ու գործարանների, բանկերի, երկաթուղիների մասնավոր սեփականությունը, դրանք դարձնելով ամբողջ ժողովրդի սեփականություն։ Գյուղացիությունը Հոկտեմբերյան ռևոլուցիայի շնորհիվ ստացավ ավելի քան 150 միլիոն դեսյատին նոր

հողեր, որոնք առաջ գտնվում էին կառավարության, բուրժուազիայի, ցարական ընտանիքի, վանքերի ու եկեղեցիների ձեռքում։ Գյուղացիներն ազատվեցին ամեն տարի կալվածատերերին վճարվող կապալավարձից, որը կազմում էր ոսկի փողով մոտ 500 միլիոն ռուբլի։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան պատմության մեջ առաջին անգամ հիմքից կործանեց հին, բուրժուա-կալվածատիրական պետական ապարատը և ստեղծեց նոր տիպի պետություն — Սովետները։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան ազատագրություն բերեց ճնշված ազգություններին։ Սովետական կառավարության հատուկ որոշմամբ, որը հայտնի է «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան» անունով, սահմանվեց Ռուսաստանի բոլոր ժողովուրդների լիակատար իրավահավասարություն։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի արձագանքները լայնորեն տարածվեցին երկրի բոլոր ծայրամասերում, թափանցեցին նրա ամենահեռավոր անկյունները, ազատ և ինքնուրույն կյանքի կոչելով նախկին ցարական Ռուսաստանի բոլոր ճնշված ժողովուրդներին, որոնք ռուս մեծ ժողովրդի օգնությամբ և բոլշևիկների փառապանծ պարտիայի ղեկավարությամբ ձեռք բերեցին իրենց ազատությունն ու ազգային վերածննդի հնարավորությունը։



***

Անսահման մեծ է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի դերը հայ ժողովրդի ազատագրման և ազգային վերածննդի գործում։ Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո, Հայաստանում իշխանությունը գրավեցին հայ ժողովրդի ոխերիմ թշնամի դաշնակները, որոնք գերմանական, իսկ այնուհետև անգլո-ամերիկյան իմպերիալիզմի հլու կամակատարներն էին։

Երեք տարի Հայաստանը տնքում էր դաշնակների լծի տակ, քայքայվում, աղքատանում։ 1919 թվականին ցանքերի տարածությունը Հայաստանում 1914 թվականի տարածության քառորդ մասն էր կազմում։ Համարյա բոլորովին դադարել էր տեխնիկական կուլտուրաների՝ բամբակի, ծխախոտի մշակությունը։ Անասունների գլխաքանակը համապատասխանորեն կրճատվել էր 2/3-ով։

Հայերի ֆիզիկական բնաջնջման գործը, ավերիչ պատերազմից հետո, շարունակում էին դաշնակների դաժան տիրապետությունն ու սովը։

Այսպիսի դրությունը երկար տևել չէր կարող։ Հայաստանի աշխատավորները բազմիցըս հանդես էին գալիս իրենց կեղեքիչների դեմ։ 1920 թվականի մայիսին համարյա ամբողջ Հայաստանում բոլշևիկների ղեկավարությամբ ծավալվեց խոշոր ապստամբություն, որը, սակայն, չկարողացավ տապալել դաշնակների լուծը։ 1920 թվականի նոյեմբերին սկսված նոր ապստամբությունը միայն, փառապանծ 11-րդ Կարմիր բանակի օգնությամբ, որին ղեկավարում էին ընկերներ Կիրովը, Օրջոնիկիձեն և Միկոյանը, հասցրեց Սովետական իշխանության հաղթությանը Հայաստանում։

Միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան հայ ժողովրդին բերեց ազատության և ազգային վերածնության հնարավորություն։ Սովետական Հայաստանում սկսեց բուռն թափով զարգանալ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, կուլտուրան։ Բավական է մատնանշել մի քանի թվեր, պատկերացնելու համար, թե



ի՞նչ տվեց Սովետական իշխանությունը Հայաստանի աշխատավորներին։

Հայաստանի արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության մեջ 1913 թվականին կազմում էր 22,9 տոկոս, իսկ դրամական արտահայտությամբ՝ 20,7 միլիոն ռուբլի, մինչդեռ 1940 թվականին այն աճել էր հասնելով 77,7 տոկոսի և կազմում էր 283,6 միլիոն ռուբլի։

1919 թվականին Հայաստանում կատարվել էր 82,7 հազար հեկտար ցանք, իսկ 1940 թվականին ցանքերի տարածությունը կազմում էր 438,9 հազար հեկտար։ Հացահատիկի համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ 1940 թվականին կրկնապատկվեց։

Սովետական Հայաստանում ստեղծված են հարյուրավոր դպրոցներ, որոնցում սովորում է տասնյակ հազարավոր աշակերտություն։ Ռեսպուբլիկայում գործում է 13 բարձրագույն ուսումնական հաստատություն, կազմակերպված է Գիտությունների Ակադեմիա, ստեղծված են տասնյակ թատրոններ, հարյուրավոր ակումբներ։

Միայն Սովետական իշխանության օրով

տասնյակ հազարավոր հայեր հնարավորություն ստացան աշխարհի բոլոր ծայրերից վերադառնալու իրենց Հայրենիքը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ Սովետական Հայաստանը դարձել է առաջավոր, ծաղկուն, ինդուստրիալ-ագրարային ռեսպուբլիկա։

***

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո, պարտիան և Սովետական կառավարությունը պետք է կազմակերպեին նոր ստեղծված պետական ապարատի աշխատանքը, պայքարը կոնտրռևոլյուցիայի և օտարերկրյա ինտերվենցիայի դեմ։

Երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան խաղաղության կարիք էր զգում, և այդ պատճառով Լենինն ու Ստալինը, մեր պարտիան, հակառակ Տրոցկու, Բուխարինի և սովետական երկրի այլ թշնամիների, 1918 թվականի մարտին հասան Գերմանիայի հետ Բրեստի հաշտության կնքմանը։ Փոքր դադարը հնարավորություն տվեց երկիրը նախապատրաստել պաշտպանության և քաղաքացիական պատերազմի համար։



1918 թվականի ամառն սկսվեց ռազմական ինտերվենցիան։ Երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան Լենինի ու Ստալինի ղեկավարությամբ և ընկեր Ստալինի անմիջական ղեկավար մասնակցությամբ կազմակերպեց Կոլչակի, Յուդենիչի, Դենիկինի, սպիտակ լեհերի, Վրանգելի ջախջախումը, որոնք իմպերիալիստական Անգլիայի, Ֆրանսիայի և Ճապոնիայի օգնությամբ ձգնում էին տապալել Սովետական իշխանությունը, վերականգնել Ռուսաստանում կալվածատերերի և բուրժուազիայի իշխանությունը։

Քաղաքացիական պատերազմում հաղթանակ տանելուց հետո պարտիան և կառավարությունը զբաղվեցին երկրի քայքայված տնտեսության վերականգնումով։ Համաշխարհային պատերազմի և նրան հաջորդող եռամյա քաղաքացիական պատերազմի հետևանքով երկիրը ծանր դրության էր հասել։

Նոր տնտեսական քաղաքականությունը, որ կիրառվեց պարտիայի 10-րդ համագումարի որոշմամբ, 1921 թվականի գարնանից, բարենպաստ պայմաններ ստեղծեց մեր ժողովրդական տնտեսության վերականգնման համար։ ՆԷՊ-ի շրջանում, էկոնոմիկայի մեջ

իշխող դիրքերը Սովետական պետության ձեռքում պահելու պայմաններում, թույլատրվեց կապիտալիստական տարրերի որոշ ազատություն։ Դա հասցրեց այն բանին, որ մասնավոր անձինք իրենց թաքցրած հարըստությունները օգտագործեցին մանր ձեռնարկություններ ստեղծելու համար, լայն սպառման ապրանքներ արտադրելու, առևտուրն աշխուժացնելու համար։ Իսկ այդ ամենը թեթևացրեց ժողովրդի, մասնավորապես գյուղացիության դրությունը, ամրացրեց պրոլետարիատի դաշինքը գյուղացիության հետ և մեր պարտիային հնարավորություն տվեց լրջորեն զբաղվելու արդյունաբերության վերակառուցմամբ, ծանր ինդուստրիայի, մասնավորապես մեքենաշինական արդյունաբերության ստեղծումով։

1925 թվականի դեկտեմբերին պարտիայի 14-րդ համագումարը, ընկեր Ստալինի առաջարկությամբ, իբրև պարտիայի հիմնական խնդիր հաստատեց մեր երկրի սոցիալիստական ինդուստրալիզացիան։

Այդ բնագավառում առաջին հաջողությունները նյութական նախադրյալներ ստեղծեցին մեր գյուղատնտեսության սոցիալիստական



վերակառուցման համար։ Եվ պարտիայի 15-
րդ համագումարը 1927 թվականի դեկտեմ-
բերին ընկեր Ստալինի առաջարկությամբ ո-
րոշում ընդունեց գյուղատնտեսության կո-
լեկտիվացման մասին։ Ընկեր Ստալինն իր
զեկուցման մեջ ասաց, որ մեր գյուղատնտե-
սությունը, մեծ մանրատվածության հետե-
վանքով, իր զարգացմամբ արդեն հետ է մը-
նում արդյունաբերությունից, և որ այդ հան-
գամանքը կհասցնի նրանց միջև անթույլա-
տրելի խզման։

1926—1927 թվականներին սոցիալիստա-
կան հատվածը արդյունաբերության մեջ ար-
դեն իշխող դիրք էր գրավում (86 տոկոս),
այնինչ մեր գյուղատնտեսությունը մասնատ-
ված էր 25 միլիոն մանր տնտեսությունների։
Կուլակները 1927 թվականին վաճառում էին
130 միլիոն փութ հաց, իսկ կոլխոզները մի-
այն 35 միլիոն փութ։ Գյուղատնտեսության
համախառն արտադրանքը արդեն անցել էր
մինչպատերազմյան մակարդակից, բայց
հացահատիկի համախառն արտադրանքը
կազմում էր նախապատերազմյան մակար-
դակի միայն 91 տոկոսը, իսկ նրա ապրան-
քային մասը միայն 37 տոկոսը։

Պարտիայի 15-րդ համագումարը, հակառակ տրոցկիստների ու բուխարինականների դիմադրության, նաև որոշում ընդունեց ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանը մշակելու մասին, որը հնարավորություն կտար ճիշտ ու պլանաչափ կերպով զարգացնել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, երկրի էկոնոմիկայում նրանց դերին համապատասխան։

Առաջին հնգամյա պլանի իրականացումն սկսվեց 1928 թվականի հոկտեմբերին։ Մեկ տարի հետո, 1929-30 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը հասավ մինչպատերազմյան մակարդակի մոտ 180 տոկոսին։ Մասնավոր կապիտալի տեսակարար կշիռը այդ նույն թվականին խոշոր արդյունաբերության արտադրանքի մեջ իջավ մինչև 0,7 տոկոսի։

1929-1933 թ. թ. ծավալվում է մասսայական կոլխոզային շինարարությունը։ Պարտիան կիրառում է համատարած կոլեկտիվացման հիման վրա կուլակությունն իբրև դասակարգ լիկվիդացնելու քաղաքականությունը։

Առաջին հնգամյա պլանի կենսագործման հետևանքով քաղաքում և գյուղում կատար-



ված սոցիալիստական վերափոխումները տնտեսական ամուր հիմք ստեղծեցին մեր երկրում սոցիալիստական հասարակակարգի կառուցման համար։

Երկրորդ հնգամյակի (1933—1937 թ. թ.) հիմնական խնդիրն էր ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցման ավարտումը։ Այդ ժամանակ մեր երկիրն արդեն բոլորովին կերպարանափոխվել էր։ Նեպական Ռուսաստանը դարձել էր սոցիալիստական Ռուսաստան, էլեկտրիֆիկացիայի և խոշոր ինդուստրիայի երկիր։

1936 թվականին ընդունվեց Ստալինյան նոր Կոնստիտուցիան, որը օրենսդրականորեն ամրապնդեց ձեռք բերված հաջողությունները։ Անտագոնիստական դասակարգերի և կապիտալիստական տարրերի լիկվիդացիան մեր երկրում լիակատար հնարավորություն տվին կիրառելու ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքը՝ գաղտնի քվեարկությամբ։

Բուխարինական—զինովևյան բանդայի բոլոր փորձերը՝ կապիտալիստական պետությունների օգնությամբ վերականգնելու մեր երկրում կապիտալիզմը, լիակատար

կերպով խորտակվեցին։ Այդ բանդան մերկացվեց ու ջախջախվեց։

Այդ աղտեղությունից մաքրվելով, Սովետական ժողովուրդը, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, անցավ երրորդ հընգամյա պլանի կենսագործմանը, որը, սակայն, ընդհատվեց մեր երկրի վրա գերմանա-ֆաշիստական զավթիչների հարձակման հետևանքով։

Բայց սոցիալիստական պլանային տնտեսությունն այդ ժամանակ արդեն բավարար չափով ապահովել էր մեր երկրի պաշտպանունակությունը։ Դեռևս երկրորդ հնգամյակի կենսագործման հետևանքով Սովետական Միությունը արդյունաբերական արտադրանքի ծավալով արդեն առաջին տեղն էր գրավում Եվրոպայում և երկրորդ տեղը՝ աշխարհում։

1940 թվականին մեզ մոտ արդեն չուգուն արտադրվում էր համարյա 4 անգամ ավելի, քան 1913 թվականին, պողպատ՝ համարյա 4,5 անգամ, նավթ՝ 3,5 անգամ ապրանքային հացահատիկ՝ 2 անգամ, բամբակի հումք՝ 3,5 անգամ ավելի։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը մեր ժողովրդին



դարձրեց երկրի բոլոր հարստությունների տերը, իր բախտի, իր ապագայի տնօրենը։ Նա մեր երկիրը փրկեց իմպերիալիստական գիշատիչների ստրկությունից և նրա առջև բաց արեց սոցիալիստական զարգացման ուղին։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը փշրեց ազգային-գաղութային ճնշման շղթաները և հիմք դրեց ՍՍՌՄ ժողովուրդների Ստալինյան մեծ բարեկամությանը, որը դարձավ Սովետական պետության հզորության աղբյուրներից մեկը։ Նա պայմաններ ստեղծեց մեր երկրի բոլոր ժողովուրդների տնտեսական և կուլտուրական բուռն զարգացման համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիան նախապատրաստեց և անցկացրեց Լենինի-Ստալինի բոլշևիկյան պարտիան, որի ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները նվաճեցին իրենց ազատությունը և կառուցեցին սոցիալիստական հասարակակարգ։ Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ մեր Հայրենիքը հետամնաց, թույլ և օտարերկրյա իմպերիալիստական պետություններից կիսակախյալ վիճակում գտնվող երկրից դարձավ առաջնակարգ, հզոր սոցիալիստական տերություն՝ զարգա-

պացած ինդուստրիայով, կոլեկտիվ գյուղատնտեսությամբ և ամենաառաջավոր կուլտուրայով։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի հաղթանակի քսանչորսերորդ տարում, 1941 թվականի հունիսի 22-ին, գերմանա-ֆաշիստական հրոսակախմբերը հարձակվեցին մեր Հայրենիքի վրա և սկսեցին ոչնչացնել սովետական խաղաղ քաղաքացիներին, հրկիզել մեր քաղաքներն ու գյուղերը, ավերել մեր ժողովրդի կուլտուրան։ Նենգ թշնամին՝ հիտլերյան Գերմանիան, որն իր ձեռքն էր գցել նվաճված եվրոպական երկրների մեծամասնության ռեզերվները, ուներ ռազմական տեխնիկայի քանակական գերակշռություն և, բացի այդ, հանկարծակի հարձակման հետևանքով ժամանակավոր հաջողություններ ձեռք բերեց, լուրջ վտանգ էր ներկայացնում մեր Հայրենիքի համար։

Գնահատելով ստեղծված դրությունը, ընկեր Ստալինը 1941 թվականի հուլիսի 3-ի իր ռադիոելույթի մեջ ասաց. «Այսպիսով, խոսքը վերաբերում է Սովետական պետության կյանքին ու մահվանը, ՍՍՌՄ-ի



ժողովուրդների կյանքին ու մահվանը, այն բանին, թե Սովետական Միության ժողովուրդներն ազա՞տ պետք է լինեն, թե՞ ընկնեն ստրկության մեջ»։

Մեծ առաջնորդ և զորավար ընկեր Ստալինի կոչով ամբողջ սովետական ժողովուրդը սրբազան պատերազմի ելավ հանուն իր Հայրենիքի պատվի, անկախության և ազատության, հանուն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նվաճումների։ Ֆաշիստական Գերմանիան իր գլխավոր ուժերը նետել էր Սովետական Միության վրա, երկրորդ ռազմաճակատի բացակայության պայմաններում։ Չնայած դրան, Գերմանիան ոչ միայն չկարողացավ հաղթանակ տանել Սովետական Միության դեմ, այլ ընդհակառակը Սովետական զորքերի հուժկու հարվածները Գերմանիային հասցրին կործանման եզրին։ Հանճարեղ զորավար, Սովետական Միության Գեներալիսիմուս ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարության շնորհիվ Սովետական բանակը մի շարք լուրջ պարտություններ հասցրեց հակառակորդին Մոսկվայի մոտ, Տիխվինի մոտ, Ղրիմում, Դոնի Ռոստովի մոտ և վերջապես, Ստալինգրադի շրջանում, որն արմատական բեկում առաջացրեց պա-

տերազմական գործողությունների ընթաց-
քի մեջ։ Ստալինգրադյան ջարդից հետո
գերմանացիներն այլևս չկարողացան ուշքի
գալ։ «Ստալինգրադը գերմանա-ֆաշիստա-
կան բանակի մայրամուտն էր» (Ստալին)։

Հայրենական Մեծ պատերազմի ընթաց-
քում Սովետական բանակի ուժերն աճում
էին, իսկ ընդհակառակը, գերմանական
բանակի ուժերը նվազում։ Եվ դա՝ շնորհիվ
Լենինի-Ստալինի պարտիայի կազմակերպող
ու ոգեշնչող դերի, շնորհիվ Հոկտեմբերյան
Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ստեղ-
ծած սոցիալիստական կարգերի, շնորհիվ
մեր դարաշրջանի մեծ զորավար, իմաստուն
առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի
հմուտ ղեկավարության։ «Հոկտեմբերյան
ռևոլյուցիայի ծնունդ հանդիսացող սոցիա-
լիստական կարգերը,—ասում է ընկեր
Ստալինը,—մեր ժողովուրդին և մեր բանա-
կին տվին մեծ ու անհաղթելի ուժ»։

1944 թվականի ընթացքում Կարմիր Բա-
նակը տասը հաջորդական խորտակիչ հար-
վածներ հասցրեց հակառակորդին, և լիովին
վռնդեց գերմանա-ֆաշիստական օկու-
պանտներին մեր սրբազան հողից։

Ամբողջ աշխարհը, ամբողջ առաջադեմ



մարդկությունը համոզվեց Սովետական
բանակի անսպառ ուժին ու հզորությանը,
երբ նա, թշնամուց մաքրելով ժամանակա-
վորապես օկուպացված սովետական տերի-
տորիաները, սկսեց Եվրոպայի ժողովուրդ-
ների ազատագրումը ֆաշիստական ստրկու-
թյան լծից։ Արդեն 1945 թվականին Սովե-
տական բանակը գերմանա-ֆաշիստա-
կան զորքերին հասցրեց մի շարք այն-
պիսի հարվածներ, որոնք իրենց հզո-
րությամբ և սրընթացությամբ հա-
վասարը չունեն պատերազմների պատմու-
թյան մեջ։ 1945 թվականին հարձակման
40 օրվա ընթացքում Սովետական բանակը
շարքից հանեց 1 միլիոն 150 հազար գերմա-
նական զինվոր ու սպա և ոչնչացրեց հակա-
ռակորդի հսկայական քանակությամբ ռազ-
մական տեխնիկա։ Գերագույն Գլխավոր
Հրամանատար ընկեր Ստալինի հանճարեղ
ստրատեգիական պլանով Կարմիր Բանակը
փայլուն կերպով իրագործեց այնպիսի մի
հոյակապ ռազմական օպերացիա, ինչպի-
սին էր հիտլերյան զորքերի բեռլինյան
խմբավորման շրջապատումն ու ջախջախու-
մը, որը Գերմանիային ստիպեց անվերա-
պահ կապիտուլյացիայի ենթարկվել։

Ֆաշիստական Գերմանիայի կապիտուլյացիայից հետո ճապոնական իմպերիալիստները համառորեն շարունակում էին պատերազմական գործողությունները, ձգձգելով երկրորդ համաշխարհային պատերազմի շուտափույթ ավարտումը։

Սովետական Միությունը, հավատարիմ իր դաշնակցային պարտքին, ընդունեց դաշնակիցների՝ ԱՄՆ-ի, Անգլիայի ու Չինաստանի առաջարկը և, հոգալով մեր երկրի հեռավոր—արևելյան պետական սահմանների լիակատար ապահովության մասին, պատերազմի վիճակ հայտարարեց ընդդեմ Ճապոնիայի։ Պատերազմական գործողությունների հենց առաջին օրերին քաջարի սովետական ռազմիկները, ստալինյան մարշալների ու գեներալների ղեկավարությամբ, կործանիչ հարվածներ հասցրին ճապոնական զորքերին։ Ճապոնացիների զորեղ ամրությունները Մանջուրիայում ավերվեցին, գովաբանված Կվանտունյան բանակը ջախջախվեց։ Չդիմանալով սովետական հզոր զենքի հուժկու հարվածներին, իմպերիալիստական Ճապոնիան կապիտուլյացիա հայտարարեց։ «Ծովերում ու ցամաքի վրա գլխովին ջախջախված և միավոր-



ված ազգերի զինված ուժերով բոլոր կողմերից շրջապատված Ճապոնիան իրեն ճանաչեց պարտված և զենքը ցած դրեց» (Ստալին)։

***

Լենին-Ստալինի փառապանծ պարտիան միշտ մեր ժողովրդի մեջ դաստիարակել է ջերմ և կենսատու հայրենասիրության վեհ զգացմունքը։ Դրա պտուղներն ամենայն պայծառությամբ դրսևորվեցին Հայրենական պատերազմի տարիներին, երբ սովետական համեստ մարդիկ անձնազոհ նվիրվածության հրաշքներ էին ցուցաբերում թշնամու դեմ մղվող դաժան մարտերում։

Ռուս զինվոր, կոմերիտական Ալեքսանդր Մատրոսովը հանուն Հարենիքի սիրո սեփական մարմնով փակեց թշնամու կրակի տարափ ժայթքող հրակնատը, որը խանգարում էր ստորաբաժանման առաջխաղացմանը։ Սովետական Միության մյուս ժողովուրդների զավակների մեջ նույնպես գտնըվեցին անձնուրաց դյուցազուններ, որոնք կրկնեցին Մատրոսովի անմահ սխրագործությունը։ Քաջարի ռազմիկներ՝ ուզբեկ Տոշիդիթովը, վրացի Կ. Մայսուրաձեն,

ադրբեջանական Գ. Մամեդովը, հայ Հ. Ավետիսյանն իրենց մարմիններով խլացրին թշնամու կրակակետերը և ուղի հարթեցին դեպի հաղթանակը։

Թիկունքում սովետական մարդիկ իրենց հերոսական աշխատանքով ռազմաճակատին անընդմեջ մատակարարում էին ամեն բան, ինչ անհրաժեշտ էր թշնամուն ջախջախելու համար։ Պատմության մեջ դեռ երբեք ժողովրդական մասսաներն այնպիսի անձնվիրությամբ չէին մասնակցել իրենց հայրենիքի պաշտպանությանը, ինչպես այդ եղավ Հայրենական Մեծ պատերազմի օրերին։

Նիժնի-Տագիլի գործարանի անվանի ֆրեզերագործ Դ. Բոսին պատերազմի օրերին, հայրենասիրական ավյունով տոգորված, իր դազգահի վրա ստեղծեց մի հարմարանք, որի շնորհիվ հերթափոխային նորման կատարեց 7620 տոկոսով։ Կուզնեցկի մետալուրգիական գործարանի ձուլող Ա. Ջալկովը պատերազմի երեք տարվա ընթացքում պլանից ավելի ձուլեց 14 հազար տոննա պողպատ, որը բավական էր 2500 տանկ արտադրելու համար։

Այսպիսի բոցաշունչ հայրենասերներ,



աշխատանքային հերոսներ մեզ մոտ հարյուրավորներն ու հազարավորներն էին։

Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի ակտիվ մասնակիցն էր հայ ժողովուրդը։ Թիկունքում և ռազմաճակատում հայ ժողովրդի զավակներն անդուլ կերպով աշխատում և անձնվիրաբար մարտնչում էին անարգ թշնամուն ջախջախելու, Հոկտեմբերյան մեծ նվաճումները պաշտպանելու համար։ Սովետական բանակի տասնյակ հայ ստալինյան գեներալներ մարտի էին առաջնորդում Կարմիր Բանակի զորագնդերը, հայ ժողովրդի 100-ից ավելի քաջարի զավակներ թշնամու դեմ մղած մարտերում հերոսական սխրագործությունների համար արժանացել են Սովետական Միության Հերոսի պատվավոր կոչմանը։

Կարմիր Բանակի այլ դիվիզիաների թվում Հայկական Կարմրադրոշ Թամանյան դիվիզիան հաղթականորեն մտավ Բեռլին և կատարելով Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի հրամանը, հաղթանակի դրոշը բարձրացրեց Բեռլինի վրա։ Դրանով նա մի նոր փայլուն էջ գրեց ազատության և անկախության համար հայ

ժողովրդի մղած պայքարի հերոսական պատմության մեջ։

Սովետական ժողովուրդը և նրա փառապանծ բանակը ֆաշիստական Գերմանիայի ու իմպերիալիստական Ճապոնիայի դեմ մղած պատերազմում ոչ միայն պաշտպանեցին մեր հարազատ Հայրենիքի անկախությունը, ազատությունն ու պատիվը, այլև ազատագրեցին Եվրոպայի ստրկացված ժողովուրդներին, ամբողջ մարդկությունն ու համաշխարհային քաղաքակրթությունը փրկեցին ֆաշիզմի սպառնալիքից։ Ձեռք բերված հաղթանակի հետևանքով անչափ աճեց Սովետական Միության հեղինակությունը միջազգային ասպարեզում, աճեցին դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերն ամբողջ աշխարհում։

Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմն ընդդեմ գերմանական զավթիչների և ճապոնական իմպերիալիստների՝ հանդիսացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդ մեր հասարակական ու պետական կարգի, մեր երկրի ժողովուրդների ստալինյան բարեկամության անխորտակելի ուժի բազմակողմանի ստուգումը։ Այն ակնառու կերպով



ցույց տվեց, որ աշխարհում չկա ավելի ամուր և ավելի կենսունակ հասարակակարգ, քան մեր սոցիալիստական հասարակակարգն է, չկա ավելի հեղինակավոր պարտիա, քան մեր կոմունիստական պարտիան է, որը պատերազմի օրերին հանդես եկավ որպես գերմանական զավթիչների դեմ համաժողովրդական պայքարի ոգեշնչողն ու կազմակերպողը, էլ ավելի հարազատացավ ժողովրդական լայն մասսաների հետ։

❋❋❋

Պատերազմի տարիներին հիտլերյան բարբարոսները հսկայական վնաս հասցրին մեր ժողովրդական տնտեսությանը։ Ֆաշիստական զավթիչները ամբողջովին կամ մասամբ ավերեցին 1710 քաղաք և ավելի քան 70 հազար գյուղ, ոչնչացրին 32 հազար արդյունաբերական ձեռնարկություն, հրկիզեցին ու ավերեցին ավելի քան 6 միլիոն շենք և օթևանից զրկեցին մոտ 25 միլիոն մարդ։ Գերմանա-ֆաշիստական զավթիչները հսկայական վնաս հասցրին մեր գյուղատնտեսությանը, նրանք ավերեցին ու կողոպտեցին 98 հազար կոլխոզ, 1876 սովխոզ ու 2890 ՄՏ կայան. Թշնամին ա-

վերեց տասնյակ հազարավոր բուժական և կուլտուր-լուսավորական հիմնարկներ։ Օկուպացիայի ժամանակաշրջանում ավերվեց 65 հազար կիլոմետր երկաթուղի, քանդվեցին հազարավոր կամուրջներ ու երկաթուղային կայարաններ, ոչնչացվեց հսկայական քանակությամբ շարժական կազմ՝ շոգեքարշեր ու վագոններ։

Հաղթականորեն ավարտելով Հայրենական պատերազմը, սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ պատերազմի հետևանքով ավերված ժողովրդական տնտեսության վերականգնմանն ու հետագա զարգացմանը, մեր Հայրենիքի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա բուռն վերելքի գործին։

Ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման, մեր երկրում կոմունիզմի հաղթանակի համար սովետական ժողովրդի պայքարի ծրագիրը հանդիսացավ Ստալինյան նոր. հնգամյակը։

Բնորոշելով հետպատերազմյան նոր հնգամյակի խնդիրները ընկեր Ստալինն ասաց. «Նոր հնգամյա պլանի հիմնական խնդիրներն են՝ վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության ու գյուղատնտեսության մինչ-



պատերազմյան մակարդակը և այնուհետև գերազանցել այդ մակարդակը շատ թե քիչ զգալի չափերով»։

Ընկեր Ստալինը խնդիր դրեց հասնել մեր ժողովրդական տնտեսության նոր հուժկու վերելքի, որը հնարավորություն տա նախապատերազմյանի համեմատությամբ եռապատկել մեր արդյունաբերության մակարդակը, որպեսզի նա արտադրի տարեկան մոտ 50 միլիոն տոննա չուգուն, մոտ 60 միլիոն տոննա պողպատ, մոտ 500 միլիոն տոննա ածուխ, մոտ 60 միլիոն տոննա նավթ։

Հնգամյակի ընթացքում պետք է վերականգնվի, կառուցվի և շահագործման հանձնվի մոտ 5900 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, 234 միլիարդ ռուբլի արժողությամբ։ Լայն կապիտալ շինարարությունը նոր հնգամյակում, արդյունաբերական արտադրանքի արագ աճման կարևորագույն պայմանն է հանդիսանում։ Նոր հնգամյա պլանն ապահովում է արդյունաբերության զարգացման այնպիսի տեմպեր, որոնք զգալիորեն գերազանցում են նախապատերազմյան հնգամյակների տեմպերից։ Արդյունաբերության համախառն արտա-

դրանքի ծավալը 1950 թվականին կկազմի 205 միլիարդ ռուբլի, այսինքն 48 տոկոսով կգերազանցի 1940 թ. մակարդակից։

Ժողովրդական տնտեսության վերականգնումն ու հետագա զարգացումը մեծ չափով պայմանավորված է մեր սև մետալուրգիայի վերելքով։ 1950 թվականին մեր մետալուրգիան տալու է 19,5 միլիոն տոննա չուգուն, 25,4 միլիոն տոննա պողպատ, 17,8 միլիոն տոննա գլանվածք։ Հարավի 17 մետալուրգիական գործարանների վերականգնումը, Մագնիտոգորսկի, Չելյաբինսկի, Նովո-Տագիլի և այլ մետալուրգիական կոմբինատների կառուցման ավարտումը զգալիորեն կընդարձակի սև մետալուրգիայի հիմնական բազան։

Հետագա զարգացում է ստանում նավթարդյունաբերությունը։ 1950 թվականին նավթի հանույթը կազմելու է 35,4 միլիոն տոննա կամ մինչպատերազմյան մակարդակի 114 տոկոսը։

Հատկապես արագ տեմպերով վերականգնվում և զարգանում է ածխային արդյունաբերությունը, որը 1950 թվականին պետք է տա 250 միլիոն տոննա ածուխ—51 տոկոսով ավելի, քան 1940 թվականին։



Էլեկտրաարդյունաբերության մեջ շահագործման կհանձնվեն 11 միլիոն 700 հազար կիլովատ նոր կարողություններ, որը հավասար է քսան նոր դնեպրոգէսների։ 1950 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունը 1940 թվականի համեմատությամբ կաճի 70 տոկոսով։

Ծանր ինդուստրիայի սիրտը հանդիսացող մեքենաշինությունը հնգամյակի վերջում պետք է մինչպատերազմյանի համեմատությամբ կրկնապատկի սարքավորման արտադրությունը։ Հնգամյակի ընթացքում կառուցվելու են 7230 կիլոմետր նոր երկաթուղիներ, լայն թափ կստանա ավտոմոբիլաշինությունը։ Հնգամյակի վերջում Միության մեջ կգործեն ավտոմոբիլային 10 հզոր գործարաններ, մինչև պատերազմը եղած 3 գործարանի փոխարեն։ Այդ կապահովի 1950 թվականին տարեկան մինչև 500 հազար ավտոմոբիլի արտադրությունը մինչպատերազմյան 146 հազարի փոխարեն։

Գյուղատնտեսության հուժկու վերելքն ապահովելու համար հնգամյա պլանի մեջ մեծ տեղ է գրավում տրակտորաշինությունը։ Լիովին վերականգնվում են Ստալինգրադի և Խարկովի տրակտորային գործա-

րանները։ Ավարտվում է Ալթայի, Լիպեցկի և Վլադիմիրի տրակտորային գործարանների կառուցումը։ Տրակտորային նոր գործարան է կառուցվում Բելոռուսիայում, կոմբայնների խոշոր գործարան Սիբիրում։

Հետպատերազմյան հնգամյակում գյուղատնտեսության զարգացումը ելնում է Սովետական Միության ժողովուրդների նյութական բարեկեցությունն ապահովելու, երկրում լայն սպառման հիմնական առարկաների և արդյունաբերության համար անհրաժեշտ հումքի առատություն ստեղծելու խնդիրներից։ 1950 թվականին գյուղատնտեսության համախառն արտադրանքը մինչպատերազմյանի համեմատությամբ կաճի 27 տոկոսով։ 1950 թվականին հացահատիկի համախառն բերքը պետք է կազմի 127 միլիոն տոննա, այնինչ 1913 թվականին, ցարական Ռուսաստանի համար ամենաբերքառատ տարում եղել է 80,1 միլիոն տոննա։ Բուռն թափով զարգանալու է սոցիալիստական անասնաբուծությունը։

Նոր հնգամյա պլանը նախատեսում է ոչ միայն վերականգնել ժողովրդի նյութական ու կուլտուրական բարեկեցության մինչպատերազմյան մակարդակը, այլև զգալիորեն



գերազանցել այն։ Ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի կատարումը պայմաններ է ստեղծում տնտեսական տեսակետից առաջավոր կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու պատմական խնդրի հաջող լուծման համար, աստիճանաբար սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար։

***

Սովետական ժողովուրդը բոլշևիկյան հաստատակամությամբ կատարում է հնգամյա պլանի առաջադրանքները։ «Մեր ամբողջ ժողովուրդը, — ասում է ընկեր Ստալինը, — լարված կերպով աշխատում է իրագործելով պատերազմի հետևանքների լիկվիդացման, ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման խնդիրները»։

Սովետական երկրի հսկայական տերիտորիայում, սովետական երիտասարդ քաղաք Կալինինգրադից մինչև Կուրիլյան կղզիները, Սառուցյալ օվկիանոսի ափերից մինչև Միջին Ասիայի կիզիչ ավազուտները, ամենուրեք եռում է ստեղծարար մեծ աշխատանքը։

Այդ լարված աշխատանքի առաջին պտուղները մարմնավորված են ժողովրդական տնտեսության 1946 թվականի պլանի կատարման արդյունքների մեջ։

1946 թվականին ՍՍՌՄ-ի արդյունաբերությունը հիմնականում ավարտեց արտադրության հետպատերազմյան վերակառուցումը։ Արդյունաբերության համախառն արտադրանքը քաղաքացիական պրոդուկցիայի գծով 1945 թ. համեմատությամբ աճեց 20 տոկոսով։ 1946 թ. ընթացքում վերականգնըված, կառուցված և շահագործման է հանձնված մոտ 800 պետական ձեռնարկություն. լուրջ հաջողություններ ձեռք բերվեցին Հարավի ածխա-մետալուրգիական բազան վերականգնելու գործում։ Դոնբասում հաջողությամբ վերականգնված և շահագործման են հանձնված տասնյակ հանքահորեր, այդ թվում Ստալինի անվան խոշոր հանքահորը, որը մինչև պատերազմը տալիս էր օրական 3,5 հազար տոննա անտրացիտ։

Բոլշևիկյան պարտիան գործի է դնում սովետական ժողովրդի նորանոր ուժեր, կյանքի է կոչում նրա ստեղծագործական նախաձեռնության նորանոր աղբյուրներ։ Հա-



մաժողովրդական նախաձեռնության լայն ալիքը — բանվորների, կոլխոզնիկների, ինտելիգենցիայի բուռն ձգտումը արժանավայել նշելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի փառապանծ 30-ամյակը, պայմանավորեցին 1947 թվականի ինն ամսվա պլանների կատարման հաջողությունները։ 1947 թվականի ինն ամսվա պլանների կատարումը բնորոշվում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ընդհանուր վերելքով։ Սոցիալիստական արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը 9 ամսում կատարված է 103 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքը 1946 թ. համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է 18 տոկոսով։

1947 թվականի ընթացքում սովետական ժողովուրդը ձեռք բերեց մի շարք խոշորագույն հաղթանակներ։ Մարտի 3-ին նորից գործող ձեռնարկությունների շարքն անցավ Դնեպրի՝ Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը, որի 72 հազար կիլովատտ կարողությամբ առաջին տուրբինն արդեն արդյունաբերական հոսանք տվեց։ Դնեպրոգէսը վերականգնողներին ուղարկած մի շնորհավորական հեռագրի մեջ ընկեր Ստալինը

գրում է. «Պարտիան և կառավարությունը հատուկ նշանակություն են տալիս մեր ժողովրդի ստեղծագործությունն ու հպարտությունը հանդիսացող Դնեպրի հիդրոէլեկտրակայանի ամենաարագ վերականգնմանը։ Դնեպրոգէսի հաջող վերականգնումը ցույց է տալիս, որ սովետական ժողովուրդը լի է վճռականությամբ ավելի արագորեն բուժելու պատերազմի հասցրած վերքերը և ապահովելու մեր Հայրենիքի հետագա հաջողությունները»։

Դնեպրի՝ Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը զգալիորեն կավելացնի միջձդնեպրյան շրջանի ու Դոնբասի էներգետիկ ռեսուրսները և կարագացնի վերականգնողական աշխատանքներն արդյունաբերության բոլոր ճյուղերում։

Վերականգնվում է Հարավի մետալուրգիայի մարգարիտը՝ Զապորոժստալը, որի բարակ մետաղաթիթեղներ արտադրող ցեխն արդեն շահագործման է հանձնված։ Այս տարվա հունիսին շահագործման հանձնվեց Զապորոժյեի մետալուրգիական գործարանի հսկա հնոցը, որ գերմանական օկուպանտները հիմքից ավերել էին։ Ամենաարագ թափով վերականգնվում և ընդարձակվում են



«Ազովստալ»-ը, Նիկոպոլի խողովակների գործարանը, մի շարք տրակտորային ու գյուղատնտեսական մեքենաշինության գործարաններ և այլն։

Արդյունաբերության լայն սպառման առարկաներ արտադրող ճյուղերը և ամենից առաջ թեթև ու տեքստիլ արդյունաբերությունը գերակատարել են արտադրանքի այս տարվա ինչպես կիսամյակային, այնպես էլ երրորդ եռամսյակի պլանները։ Թեթև և տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունները անցյալ տարվա երրորդ եռամսյակի համեմատությամբ այս տարվա երրորդ եռամսյակում ավելացրել են բամբակի գործվածքեղենի արտադրությունը 31 տոկոսով, բրդե գործվածքեղենինը 34 տոկոսով, կոշկեղենինը 44 տոկոսով։ Այս նվաճումները ցույց են տալիս պարտիայի և կառավարության մեծ հոգատարությունը, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման մասին։

1947 թվականը նշանավորվեց սոցիալիստական գյուղատնտեսության լուրջ հաջողություններով։ Ցանքերի տարածությունն աճեց անցյալ տարվա համեմատությամբ մոտ 8 միլիոն հեկտարով։ Հացահատիկային

կուլտուրաների համախառն բերքը 1947
թվականին, կլիմայական բարենպաստ պայ-
մանների և գյուղատնտեսական աշխա-
տանքները լավ կազմակերպելու հետևան-
քով, 1946 թվականի բերքի համեմատու-
թյամբ աճեց 58 տոկոսով։

Լայն սպառման պարենային և արդյու-
նաբերական ապրանքների արտադրությունն
աճելու շնորհիվ զգալիորեն աճել են շուկա-
յական ապրանքների ֆոնդերը և ապրանք-
ների վաճառքը բնակչությանը։ 1947 թվա-
կանի առաջին եռամսյակում պետական և
կոոպերատիվ մանրածախ առևտրական
ցանցի միջոցով բնակչությանը վաճառվել է
25 տոկոսով ավելի, իսկ երկրորդ եռամսյա-
կում 21 տոկոսով ավելի ապրանքներ, քան
անցյալ տարվա համապատասխան եռամս-
յակներում։ 1947 թվականի ինն ամսվա ըն-
թացքում կոոպերատիվ կազմակերպություն-
ները քաղաքներում և բանվորական ավան-
ներում բացել են 24 հազար խանութ ու
կրպակ և հասարակական սննդի 3500 ձեռ-
նարկություն։

Արդյունաբերության և գյուղատնտեսու-
թյան ընդհանուր վերելքի պայմաններում
մեծ նշանակություն ունի երկաթուղային



տրանսպորտի աշխատանքի բարելավումը։
Երկաթուղիներում օրական միջին բեռնումն
այս տարվա երրորդ եռամսյակում աճել է
անցյալ տարվա համեմատությամբ 11 տո-
կոսով։ Գետային տրանսպորտը բեռների
փոխադրումն ավելացրեց անցյալ տարվա
համեմատությամբ 24 տոկոսով։

Օկուպացիայից տուժած շրջաններում
տնտեսությունն արագ թափով վերականգն-
վում է։ 1946 թվականին և այս տարվա ինն
ամսվա ընթացքում այդ շրջաններում կա-
տարվել են ավելի քան 29 միլիարդ ռուբլու
կապիտալ աշխատանքներ։ Արդյունաբերու-
թյան համախառն արտադրանքը անցյալ
տարվա երրորդ եռամսյակի համեմատու-
թյամբ այդ շրջաններում աճել է 29 տոկո-
սով։

Գերմանական օկուպացիայից ազատա-
գրված շրջաններում 1947 թվականի ինն
ամսվա ընթացքում կառուցված և վերա-
կանգնված է ավելի քան մեկ և կես միլիոն
քառակուսի մետր բնակելի տարածություն՝
քաղաքներում, և 153 հազար բնակելի
տուն՝ գյուղական վայրերում։

Այս բոլոր փաստերն աննառու կերպով
հաստատում են, որ Սովետական Միության

ժողովրդական տնտեսությունը բուռն վերելք է ապրում։ Պետական պլանի ամսեամիս գերակատարումը հնարավորություններ է ստեղծում հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

***

Հաջողությամբ է իրագործվում Սովետական Հայաստանի նոր հնգամյա պլանը, որը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանի բաղկացուցիչ մասն է կազմում։

Նոր հնգամյակի առաջին տարում Սովետական Հայաստանում կառուցվեց և շահագործման հանձնվեց 15 պետական ձեռնարկություն։ Լրիվին կամ մասնակիորեն շահագործման են հանձնվել Կաբելի, Կորդի, Մահուդի, Սոսնձի գործարանները և այլ ձեռնարկություններ։ Հնգամյակի երկրորդ տարում գործող ձեռնարկությունների շարքը մտան Համամլուի Շաքարի գործարանը, Ալավերդու Քիմիական կոմբինատի պարարտանյութեր արտադրող ցեխը, յուրացվեցին մի շարք նոր արտադրություններ։ Ներկայումս Սովետական Հայաստանի արդյունա-



բերությունը տալիս է մոտ 500 տեսակի զանազան արտադրանք։

Սովետական իշխանության գոյության տարիների ընթացքում Հայաստանում լայն զարգացում են ստացել առաջավոր ինդուստրիայի այնպիսի ճյուղեր, ինչպես քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, լեռնահանքային արդյունաբերությունը, մետաղամշակման, մեքենաշինության, տեքստիլ, սննդի, շինանյութերի արդյունաբերությունը և այլն, որոնց առջն նոր հնգամյակում չափազանց մեծ հեռանկարներ են բացվում։

1946 թվականին Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1945 թվականի համեմատությամբ աճեց 13 տոկոսով։

Ավելի փայլուն հաջողություններ ձեռք բերվեցին նոր հնգամյակի երկրորդ տարում. երբ արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ լայն ծավալ ստացավ սոցիալիստական մրցությունը ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիայի 30-րդ տարեդարձի։ Ծավալված լայն մրցության շնորհիվ արդյունաբերության համախառն արտադրանքը 1947 թվականի ին:

ամսվա ընթացքում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 25 տոկոսով։ Տարեկան պլանները ժամկետից շուտ կատարել և այժմ լրացուցիչ արտադրանք են տալիս Երևանի Ավտոդողերի, Բամբակազտիչ, Ապակե տարայի, Կաթնեղենի գործարանները, Ձորագետի էլեկտրակայանը, Կալինինոյի և Բասարգեչարի տորֆի ձեռնարկությունները։ Տեղական արդյունաբերության մինիստրության լայն սպառման մետաղյա առարկաների գործարանը, չափի ու կշռի պիտույքների գործարանը, Պեմզաբլոկի գործարանը, Տեռակի ֆաբրիկան և այլն ձեռնարկություններ։

Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերությունը 1947 թվականի ինն ամսվա արտադրական պլանը կատարել է 109,3 տոկոսով։

Այս տարի գյուղատնտեսական աշխատանքներն ավելի լավ կազմակերպելու հետևանքով, կոլխոզների մեծ մասը լավ բերք ստացավ։ 1946 թվականի համեմատությամբ հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը այս տարի աճեց 39 տոկոսով։



Լավ է ընթանում տեխնիկական կուլտուրաների, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, կարտոֆիլի բերքահավաքը։

Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը, ի հավերժացումն Մեծ Հոկտեմբերի 30-ամյակի, պետք է լարի բոլոր ուժերը և արագ ու անկորուստ ավարտի տեխնիկական կուլտուրաների բերքահավաքը, աշնանացանն ու ցրտահերկը, կատարի պետության հանդեպ ունեցած պարտավորությունները, մեծ առաջնորդ ընկեր Ստալինին տրված խոստումը պատվով կենսագործելու համար։

***

Մեր երկրում տրադիցիա է դարձել Մեծ Հոկտեմբերի տարեդարձը դիմավորել նախատոնական Սոցիալիստական Մրցության ծավալումով, հանում նորանոր արտադրական հաջողությունների։ Այս տարի նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության նախաձեռնողը եղան Լենինգրադի բանվորները, որոնք դիմեցին Սովետական Միության բոլոր աշխատավորներին և կոչ արին Մեծ Հոկտեմբերի 30-րդ տարեդարձը դիմավորել նոր հնգամյակի երկրորդ տարվա

պլանը ժամկետից շուտ, մինչև նոյեմբերի 7-ը կատարելով։

Լենինգրադցիների կոչը ջերմ արձագանք գտավ աշխատավորների մեջ։ Նրանց օրինակով, Հոկտեմբերյան տոնը արժանավայել դիմավորելու համար Համամիութենական Սոցիալիստական Մրցության մեջ մըտան միլիոնավոր բանվորներ, ծառայողներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Սոցիալիստական մրցության դրոշի տակ կանգնեց կոլխոզային գյուղացիությունը։ Մեր երկրի բոլոր ծայրերից դեպի Հայրենիքի սիրտը՝ Մոսկվա, ընկեր Ստալինի անունով ուղարկվում էին հայրենասիրական նամակներ, որոնց մեջ աշխատավորները սիրելի առաջնորդին հայտնում էին իրենց պատրաստակամությունը՝ աշխատանքային նորանոր սխրագործություններով մինչև Հոկտեմբերի 30-ամյակը, ժամկետից շուտ, կատարելու տարեկան պլանները, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը։

Կոլխոզնիկները, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողները պարտավորություն էին ստանձնում այս տարի հանել հացա-



հատիկային ու տեխնիկական կուլտուրաների բարձր բերքի և անասնաբուծության բարձր մթերատվության, երկրին տալ ավելի շատ հաց, բամբակ, միս, կաթ։

Սոցիալիստական մրցությունն իր վառ արտահայտությունը գտավ ստախանովյան շարժման զարգացման մեջ։ Հետպատերազմյան հնգամյակն առաջ քաշեց նոր ստախանովականների։ Ամբողջ երկրին հայտնի են Դոնեցի հանքափորներ Զապորոժեցի և Լուկիչևի, Օրեխովո Զուևոյի տեքստիլ կոմբինատի ջուլհակուհի Վոլկովայի, Գորկու ավտոգործարանի դարբին Կուրատովի, որը ավտոմոբիլի մասերի մշակման մեջ գերազանցեց ամերիկյան ամենաբարձր նորմաները, Մարիուպոլի ձուլող վարպետ Կուշերինի և շատ ուրիշների անունները։

Գյուղում հռչակվեցին բարձր բերքի վարպետները ուկրաինացի Մարկ Օզյորնին, Դոնեցի տրակտորիստուհի Պրասկովյա Անգելինան, Ալթայում Պյոտր Վարիվոդան, Ադրբեջանում՝ օղակավարուհի Բաստի Բագիրովան, Հայաստանում՝ օղակավարուհի Մարիամ Մարտիրոսյանը, Վրաստանում՝ բրիգադիր Ստեփան Կաքաբձեն և շատ ու-

ըիշներ, որոնք Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի պատվավոր կոչման արժանացան ցորենի, ճակնդեղի, բամբակի, եգիպտացորենի բարձր բերք ստանալու համար։

Ամբողջ երկրին հայտնի է Մոսկվայի փոքրալիտրաժ ավտոմեքենաների գործարանի բանվորուհի Աննա Կուզնեցովան, որն իր երիտասարդական բրիգադայով մի քանի անգամ գերազանցելով արտադրանքի նորմաները, այժմ աշխատում է 1950 թվականի պլանի կատարման հաշվին։ Աննա Կուզնեցովան և նրա բրիգադան գործով ապացուցեցին, որ ամբողջ գործարանի հնգամյա պլանը հնարավոր է կատարել ժամկետից շուտ։

Երևանի Գյուղատնտեսական Գործիքների գործարանի խառատ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Գուրգեն Ղազանչյանը Հայաստանում առաջինը արդեն կատարել է իր հնգամյա ծրագիրը և այժմ աշխատում է 1951 թվականի նորմայի հաշվին։ Այսպիսի խիզախ նովատորներով հարուստ է մեր երկիրը, և դրանումն է նրա հզոր ուժը։

Հետպատերազմյան ժամանակվա ստախանովյան շարժման համար ամենաբնորոշ



երևույթը կոլեկտիվ ստախանովյան աշխատանքի կազմակերպման ձգտումն է։ Ուրալյան տեխնոլոգ Ալեքսանդր Իվանովի և Մոսկվայի վարպետ Նիկոլայ Ռոսիյսկու նախաձեռնությամբ տասնյակ հազարավոր տեխնոլոգներ ու վարպետներ համառորեն աշխատում են արտադրությունը կատարելագործելու ուղղությամբ։ Մոսկվայի «Պարիժսկայա կոմունա» կոշկեղենի ֆաբրիկայի անվանի ստախանովական Մատրոսովի նախաձեռնությամբ շատ ձեռնարկություններում կազմված են աշխատանքի ստախանովյան մեթոդների արմատավորման կազմակերպչական ու տեխնիկական պլաններ։

Մեր երկրում ամենուրեք հանդես եկող համաժողովրդական աշխատանքային սխրագործության հիմքում ընկած է սովետական հայրենասիրության մեծ, կենսատու ուժը։ Սովետական հայրենասիրությունը սովետական հասարակության զորեղ շարժիչ ուժն է։ «Սովետական հայրենասիրության ուժը, — մատնանշում է ընկեր Ստալինը, — այն է, որ նրա հիմքը ոչ թե ռասսայական կամ նացիոնալիստական նախապաշարմունքներն են, այլ ժողովրդի խորին նվիրվածությունն ու հավատարմությունը իր սո-

վետական Հայրենիքին, մեր երկրի բոլոր ազգերի աշխատավորության եղբայրական համագործակցությունը»։

Սովետական հայրենասիրության հատկանշական գիծը նրա գործունությունն է, զգացմունքի խորությունը, որ չափվում և բնորոշվում է գործով։ Հպարտանալ իր Հայրենիքով և սիրել այն— նշանակում է անդուլ կերպով աշխատել նրա բարօրության համար, անձնվիրաբար և բոլոր ուժերով պայքարել Սովետական պետության շահերի համար, սոցիալիստական Հայրենիքի շահերի համար։

Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին սովետական մարդիկ պետք է մի նոր առաջընթաց քայլ կատարեն իրենց տնտեսական ու հոգևոր զարգացման գործում։ Այդ անցումը պահանջում է ուժեղացնել սովետական մարդկանց մեջ կոմունիստական գիտակցության դաստիարակումը։ Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը մեր հաղթանակների կարևորագույն պայմանն է։ Կոմունիզմի կառուցումը պահանջում է անողոք պայքար մղել հնամոլության և քարացածության դեմ, մարդկանց գիտակցության միջից



կապիտալիզմի բոլոր մնացուկները վերացնելու համար։ Կոմունիզմը պահանջում է բազմակողմանիորեն պատրաստված, բազմակողմանիորեն զարգացած և կուլտուրական մարդիկ։

Այս բանին հասնելու համար անհրաժեշտ է բանվորների և կոլխոզնիկների կուլտուրական-տեխնիկական մակարդակի հետագա հումկու վերելք, նրանց դաստիարակումը կոմունիստական ոգով, անհրաժեշտ է օրավուր կատարել ընկեր Ստալինի այն ցուցումը, որ պետք է «զարգացնել ու արմատավորել սովետական հայրենասիրությունը»։

Արմատավորել սովետական հայրենասիրությունը— նշանակում է մեր մարդկանց մեջ ուժեղացնել սեր դեպի իրենց Հայրենիքը, դեպի բոլշևիկյան պարտիան, իրենց պետական և հասարակական պարտքի բարձր գիտակցում, բարձրացնել մեր մարդկանց ակտիվությունը սոցիալիստական հասարակակարգի հետագա զարգացման համար մղվող պայքարում, պայմաններ ստեղծել սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար։

Նոր հնգամյա պլանի հաջող կատարումը մի խոշոր առաջընթաց քայլ կլինի սոցիա-

լիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին։

***

Սովետական պետության աճման և ամրապնդման հետ միասին զարգանում է նաև սովետական կուլտուրան։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հենց առաջին օրերին մեր երկրում հռչակվեց երկու սեռի երեխաների ընդհանուր պարտադիր ձրի ուսուցումը, դպրոցների և ուսուցիչների նյութական ապահովությունը պետության հաշվին և այլն։

Սովետական կառավարությունը հսկայական գումարներ է ծախսում ժողովրդական լուսավորության վրա։ Ստալինյան հնգամյակների տարիներին հատկապես արագ թափով աճեց Սովետական Միության մեջ դպրոցական ցանցը և սովորողների թիվը, որը մինչռևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ համարյա թե հնգապատկվել է։ Միայն նախապատերազմյան 10—12 տարվա ընթացքում Սովետական Միության մեջ կառուցվել է ավելի քան 60 հազար նոր դպրոց։ Այս հսկայական կուլտուրական աշխատանքի հետևանքով ՍՍՌՄ-ում վերացված է բնակչության անգրագիտությունը։



Սովետական իշխանության գոյության տարիների ընթացքում մեծ չափով աճել է բարձրագույն ուսումնական հաստատությունների ցանցը։ Եթե ցարական Ռուսաստանում կար միայն 91 բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 112 հազար ուսանողությամբ, ապա ներկայումս ՍՍՌՄ-ում գործում է մոտ 800 բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 670 հազար ուսանողությամբ, այսինքն ավելի քան Եվրոպայի բոլոր երկրներում՝ միասին վերցրած։

Մի շարք միութենական ռեսպուբլիկաներում ստեղծված են Գիտությունների ակադեմիաներ։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում անչափ մեծ է գրքերի և թերթերի դերը։ ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդներն ունեն իրենց մայրենի լեզվով հրատարակություններ։ Եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանում լույս էր տեսնում 859 անուն թերթ՝ 2,7 միլիոն տիրաժով, ապա ներկայումս Սովետական Միության մեջ լույս է տեսնում 7 հազար անուն թերթ՝ 30 միլիոն տիրաժով։

ՍՍՌՄ ժողովուրդների կյանքում մեծ իրադարձություն է ընկեր Ստալինի երկերի ժո-

ղովածուի հրատարակումը, որ թարգման-
վում և լույս է տեսնում ՍՍՌՄ ժողովուրդնե-
րի բազմաթիվ լեզուներով։ Չորրորդ հրատա-
րակությամբ լույս է տեսնում Վ. Ի. Լենինի
երկերի ժողովածուն։

Կուլտուրան ժողովրդական մասսաների
մեջ արմատավորելու մեծագույն գործոն են
հանդիսանում կինոն և թատրոնը։ Մինչև
Հոկտեմբերյան ռևոլյուցիան ցարական Ռու-
սաստանում կար 153 թատրոն։ Ներկայումս
ՍՍՌՄ-ում գործում են 700 թատրոն, չհաշ-
ված հազարավոր կիսապրոֆեսիոնալ ու ինք-
նագործ թատրոնները։

ՍՍՌՄ ժողովուրդների կուլտուրայի
ծաղկման հիմքն է հանդիսանում լենինյան-
ստալինյան ազգային քաղաքականությունը։
Ձևով ազգային, բովանդակությամբ՝ սոցիա-
լիստական կուլտուրայի ծաղկման մեջ դրս-
ևորվում է սովետական դեմոկրատիայի,
սովետական պետական ու հասարակական
կարգի անհաղթահարելի ուժը։

***

Երկրորդ համաշխարհային պատերազմը և
հետպատերազմյան միջազգային հարաբե-
րությունները արմատական փոփոխություն-



ներ մտցրին աշխարհի քաղաքական քարտե-
զի վրա, հասցրին քաղաքական ուժերի նոր
տեղադրությանը միջազգային ասպարեզում։
Ուժերի այն նոր հարաբերակցությունը, որ
ստեղծվել է երկրորդ համաշխարհային պա-
տերազմի մեջ հաղթանակը տարած պետու-
թյունների միջև, պետությունների այն նոր
քաղաքական վերախմբավորումը, որ ստեղծ-
վում է մեր օրերում, արտահայտում են երկ-
րորդ համաշխարհային պատերազմի հետե-
վանքով միջազգային քաղաքականության
մեջ կատարված խոր փոփոխությունները։

Հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիս-
տական Ճապոնիայի դեմ մղվող պատերազ-
մի ընթացքում արդեն, տերությունների դե-
մոկրատական կոալիցիայի լագերում խոր
տարակարծություն գոյություն ուներ ինչպես
պատերազմի նպատակների, այնպես էլ աշ-
խարհի հետպատերազմյան կարգավորման
խնդիրները որոշելու մեջ։

Սովետական Միությունը և դեմոկրատա-
կան երկրները պատերազմի հիմնական նը-
պատակն էին համարում դեմոկրատական
կարգերի վերականգնումն ու ամրապնդումը
Եվրոպայում, ֆաշիզմի ոչնչացումը և այն-
պիսի պայմանների ստեղծումը, որ Գերմա-

նիան ու Ճապոնիան զրկված լինեն նոր ագրեսիայի հնարավորություններից։ Սովետական Միությունը և դեմոկրատական երկրները ձգտում էին ապահովել բազմակողմանի ու տևական համագործակցությունը աշխարհի պետությունների ու ժողովուրդների միջև։

Այնպիսի կապիտալիստական տերություններ, ինչպես ԱՄՆ-ը և Անգլիան, որոնք երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում հանգամանքների բերումով Սովետական Միության ու աշխարհի դեմոկրատական ժողովուրդների հետ միևնույն ճակատում էին, պատերազմի մեջ իրենց նպատակ էին դնում միայն ազատվել համաշխարհային շուկաներում իրենց մրցակիցներից՝ Գերմանիայից և Ճապոնիայից, որոնք բացեիբաց սպառնում էին նրանց գաղութներին ու ազդեցության շրջաններին։

Մոնոպոլիստական կապիտալի ազդեցիկ շրջանները ԱՄՆ-ում և Անգլիայում աջակցում էին Գերմանիայի ու Ճապոնիայի դեմ մղվող պատերազմին։ Բայց նրանք այդ բանն անում էին ոչ թե հանուն դեմոկրատիայի հաղթանակի և ոչ թե համազգային շահերից ելնելով, այլ իրենց դասակարգային նեղ, էգոիստական շահերից էին ելնում։



Անգլո-ամերիկյան մոնոպոլիստները շահագրգռված չէին և չէին կարող շահագրգռված լինել ֆաշիզմի ոչնչացումով ու դեմոկրատական սկզբունքների հաղթանակով։ Նրանք միայն ձգտում էին ամրապնդել աշխարհում իրենց տիրապետող դիրքը։ Հենց այս հիմնական նպատակին էլ ենթարկված էր անգլո-ամերիկյան դաշնակիցների վարմունքը, որոնք պատերազմի չորս տարվա ընթացքում փաստորեն արգելակում էին երկրորդ ռազմաճակատի բացմանը։

Միայն այն ժամանակ, երբ Սովետական Միությունը—հակահիտլերյան կոալիցիայի այդ գլխավոր ու վճռական ուժը խորտակիչ հարվածներ հասցրեց գերմանական ռազմական մեքենային և երբ անգլո-ամերիկյան մոնոպոլիստական կապիտալի պարագլուխները համոզվեցին, որ Սովետական Միությունը միայնակ, առանց Անգլիայի ու Ամերիկայի օգնության ընդունակ է ո՛չ միայն վերջնական պարտության հասցնելու Գերմանիային, այլև ամբողջ Եվրոպան ազատագրելու գերմանական օկուպացիայից, այդ ժամանակ անգլո-ամերիկյան իմպերիալիստները բաց արին երկրորդ ռազմաճակատը ոչ թե ֆաշիզմը ոչնչացնելու նպատակով,

այլ, որպեսզի թույլ չտային Կարմիր Բանակի ներթափանցումը Արևմտյան Եվրոպայի երկրները։

Դեռ պատերազմի ընթացքում Չերչիլը և նրա համախոհները՝ պարոնայք վանդենբերգները, դալլեսները, հուվերները և ուրիշները, ձգտում էին պատերազմական իրադարձությունները զարգացնել այնպիսի ուղիով, որպեսզի Սովետական Միությունն ու Գերմանիան միմյանց լիովին արյունաքամ անեին, որ Սովետական Միության ուժերը հյուծվեին և նա խիստ կերպով թուլանար։ Այդ պարոնայք ձգտում էին թույլ չտալ ֆաշիզմի և ռեակցիայի ուժերի լիակատար ջախջախումը, ձգտում էին պատերազմն ավարտել իրենց համար նպաստավոր պայմաններում, որպեսզի այնուհետև կարողանային թելադրել իրենց համար նպաստավոր հաշտության պայմաններ և ապահովեին իրենց լիակատար տիրապետությունը միջազգային ասպարեզում։

Սակայն Սովետական Միության պատմական հաղթանակները հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ, լիովին քայքայեցին իմպերիալիստների նենգ պլանները։ Այդ հաղթանակի հետևան-



քով ամրապնդվեցին դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը միջազգային ասպարեզում։

Դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի ամրապնդումն արտահայտվեց նախ այն բանով, որ Սովետական Միությունը պատերազմից դուրս եկավ ոչ թե թույլ և հյուծված, ինչպես այդ կամենում էին անգլո-ամերիկյան մոնոպոլիաները, այլ նա պատերազմից դուրս եկավ ավելի ուժեղ և հզոր։

Սովետական Միությունը դարձել է խոշորագույն միջազգային գործոն, որը ոչ միայն հանդես է գալիս նաև գլխավոր խոչընդոտը անգլո-ամերիկյան մոնոպոլիաների համաշխարհային տիրապետություն հաստատելու խելացնոր պլանների իրագործման ճանապարհին, այլև հանդես է գալիս խաղաղության և անվտանգության գլխավոր պաշտպանը ամբողջ աշխարհում։ Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով Սովետական Միությունը, որը ջախջախեց իր հիմնական հակառակորդներին՝ գերմանական ֆաշիզմն ու ճապոնական իմպերիալիզմը, լուծեց Սովետական Միության ժողովուրդների մի շարք պատմական իղձերը (Պորտ-Արթուրի, Սախալինի, Կուրիլյան կղզիների,

Մեմելի մարզի և այլ տերիտորիաների վերամիացումը մեր Հայրենիքին), դարձել է գլխավոր ու վճռական ուժը ժողովուրդների ու պետությունների միջև խոլական խաղաղություն ստեղծելու և այն ամրապնդելու գործում։ Այս ամենի հետևանքով ուժեղացել են Սովետական Միության միջազգային դիրքերը, որը ներկայումս հանդես է գալիս իբրև ժողովուրդների միջև բարեկամության և խաղաղության համար պայքարող գլխավոր մարտիկ։ Խաղաղության այս հետևողական իմաստուն քաղաքականությունն աջակցություն և հավանություն է գտնում կապիտալիստական երկրների պրոգրեսիվ շրջանների և աշխարհի ազատասեր ժողովուրդների կողմից։

Երկրորդ՝ դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի ամրապնդումը արտահայտվեց այն բանում, որ Կարմիր Բանակի օգնությամբ Եվրոպայի մի շարք երկրների ժողովուրդներ իրենց երկրներն ազատագրեցին գերմանական օկուպացիայից և հաստատեցին խսկական ժողովրդական դեմոկրատիա։

Հարավ-արևելյան և արևելյան եվրոպական մի շարք երկրներ, ինչպես Հարավսլավիան, Բուլղարիան, Ռումինիան, Հունգա-



րիան, Լեհաստանը, որոնք մինչև համաշխարհային երկրորդ պատերազմը պլացդարմ էին հանդիսանում Սովետական Միության վրա հարձակվելու համար, երկրներ, որոնց կառավարող ռեակցիոն շրջանները ամեն կերպ դավաճանում էին իրենց ժողովուրդների շահերին և զենք էին ծառայում իմպերիալիստների ձեռքում, դադարել են արևմտյան իմպերիալիզմի գործակալությունը լինելուց։ Սովետական Միության օգնությամբ տապալելով ռեակցիոն ռեժիմները, այդ երկրների ժողովուրդներն իրենց մոտ հաստատել են դեմոկրատական նոր կարգեր, որոնք ապահովում են ժողովրդական տնտեսության, կուլտուրայի բուռն ծաղկումը և նրանց անկախությունը։

Նոր դեմոկրատիայի երկրները դուրս են եկել համաշխարհային տնտեսության կապիտալիստական սիստեմից և կանգնել են զարգացման ինքնուրույն ուղու վրա։ Այդ երկրներում իրագործված են խոշորագույն սոցիալ-տնտեսական բարեփոխումներ (ագրարային ռեֆորմ, արդյունաբերության և բանկերի ազգայնացում, ազգային հարցի լուծում և այլն), որոնք հեշտացնում են այդ

երկրների առաջխաղացումը սոցիալիզմի ուղիով։

Երրորդ՝ դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի աճումն արտահայտվեց այն բանում, որ անչափ աճել է բանվորական ու դեմոկրատական շարժման թափը կապիտալիստական աշխարհի երկրներում։ Ռեակցիայի և դեմոկրատիայի ուժերի միջև մղվող պայքարում պրոգրեսիվ պրոֆմիությունները, որոնք իրենց շարքերում միավորում են ավելի քան 72 միլիոն մարդ, սկզբունքային-դեմոկրատական դիրքեր են գրավում, պաշտպանելով աշխատավորական լայն մասսաների արմատական շահերը, ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, ամուր ու երկարատև խաղաղությունը։

Չորրորդ՝ պատերազմի հետևանքով տեղի ունեցավ կոմունիստական պարտիաների բուռն աճում կապիտալիստական աշխարհի երկրներում։ Պատերազմի ժամանակաշրջանում կոմունիստական պարտիաները ամենաակտիվ և կազմակերպող ուժն էին գերմանական ֆաշիստների դեմ մղվող պայքարում։ Կոմունիստներն իրենց հերոսական պայքարով նվաճեցին իրենց երկրների ժողովուրդների համակրանքը։ Ահա թե ինչու



պատերազմը ավարտվելուց հետո կոմունիստական պարտիաները Եվրոպայի մի շարք երկրներում դարձան ազդեցիկ ուժ։ Այդ պարտիաները Եվրոպայի մի շարք երկրներում դարձել են կառավարական պարտիաներ, որոնք խոշորագույն քաղաքական դեր են խաղում իրենց երկրների ներքին և արտաքին կյանքում։

Հինգերորդ՝ դեմոկրատիայի ուժերի աճումը արտահայտվեց գաղութային աշխարհի երկրներում ազգային-ազատագրական շարժման ուժեղանալու մեջ, որը հասցրեց իմպերիալիզմի դիրքերի թուլացմանն այդ երկրներում։

Արևելքի ժողովուրդները վերջնականապես համոզվեցին, որ իմպերիալիստական տիրապետությունը հակասում է այդ ժողովուրդների շահերին, որովհետև նա ստրկացնում է այդ ժողովուրդներին։ Ուստի երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում տեղի ունեցավ ազգային-ազատագրական շարժման բուռն աճում գաղութային աշխարհի երկրներում։ Դրա հետևանքով մենք այսօր տեսնում ենք դեմոկրատական ուժերի դիրքերի ամրապնդումը Ինդոնեզիայում, Հնդկաչինում, Հնդկաստանում և այլ երկրներում։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանում և նրանից հետո տեղի ունեցած խոշորագույն քաղաքական ու սոցիալական փոփոխությունների հետևանքով աշխարհում ստեղծվեց դեմոկրատական պետությունների ճամբարը, հակաիմպերիալիստական ճամբարը՝ Սովետական Միության գլխավորությամբ, որի հիմնական նպատակն է քայքայել իմպերիալիզմը, ամրապնդել դեմոկրատիան և լիկվիդացնել ֆաշիզմի մնացորդները։

Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով ստեղծվեց նաև միջազգային ռեակցիայի ճամբարը, որի արմատները գտնվում են դեռևս մինչպատերազմյան միջազգային հարաբերությունների մեջ, ճամբար, որը գլխավորում են անգլո-ամերիկյան մոնոպոլիստական շրջանները, ձգտելով օգտագործել հետպատերազմյան քաղաքական ու տնտեսական դժվարությունները կապիտալիստական աշխարհի մի շարք երկրներում, անգլո-սաքսոնական երկրների համաշխարհային տիրապետությունը հաստատելու իրենց իմպերիալիստական նպատակների իրականացման համար։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները



հանդես են գալիս իբրև միջազգային ռեակցիայի գլխավոր մունետիկներ, իբրև այդ ռեակցիայի գլխավոր ղեկավարներ, ձգտելով ինչպես էլ լինի մոբիլիզացնել իրենց բոլոր ուժերը, կապիտալիզմի հետագա թուլացման առաջն առնելու համար։

Ֆաշիստական Գերմանիայի ու իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախումը և Իտալիայի ու Ֆրանսիայի միջազգային դիրքերի խիստ թուլացումը հասցրին անգլո-ամերիկյան իմպերիալիստների դիրքերի խիստ ուժեղացմանը։ Ամերիկան և Անգլիան հանդես են գալիս իբրև կապիտալիստական սիստեմի գլխավոր պաշտպաններ։

Ներկայումս ստեղծված անգլո-ամերիկյան բլոկի մեջ Անգլիան խաղում է կրտսեր պարտնյորի դեր։ Այն արտաքին քաղաքական գիծը, որ վարում է ժամանակակից Ամերիկան, հիմնված է այսպես կոչված «Տրումենի դոկտրինայի» վրա։ «Տրումենի դոկտրինան» ամերիկյան իմպերիալիզմի էքսպանսիոնիստական քաղաքականության բացահայտ հռչակումն է, քաղաքականություն, որի նպատակն է ատոմա-դոլարային դիպլոմատիայի օգնությամբ իր տիրապետությունը հաստատել աշխարհի վրա։ Այդ

քաղաքականության դրսևորումը հանդիսացավ այսպես կոչված «Մարշալի պլանը», որի նպատակն է պատերազմի հետևանքով քայքայված եվրոպական երկրներին տնտեսական օգնություն ցույց տալու անվան տակ ստրկացնել նրանց, նրանց վրա հաստատել ամերիկյան մոնոպոլիաների տիրապետությունը, որոնք առասպելական հարստություններ ձեռք բերեցին երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում։ Ամերիկյան իմպերիալիստները հանդես են գալիս իբրև համաշխարհային նոր պատերազմի գլխավոր մունետիկներ։

Այս ամենի հետևանքով ստեղծվեցին իմպերիալիստական լագերը, հակադեմոկրատական լագերը, որի հիմնական նպատակն է հաստատել ամերիկյան իմպերիալիզմի համաշխարհային տիրապետությունը, ջախջախել դեմոկրատիան։

Իմպերիալիստական լագերը դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի դեմ մղած պայքարում օգտագործում է սոցիալիստական աջ պարտիաներին պատկանող դավաճաններին, ինչպիսիք են Բլյումը և Ռամադյեն՝ Ֆրանսիայում, Էտլին և Բևինը՝ Անգլիայում, Շումախերը՝ Գերմանիայում,



Ռենները և Շարֆը՝ Ավստրիայում, Սարագատը՝ Իտալիայում, որոնք հանդես են գալիս իբրև իմպերիալիստների հավատարիմ աջակիցներ։ Նրանք քայքայում են մտցնում բանվոր դասակարգի շարքերում և թունավորում են նրա գիտակցությունը։ Այդ դավաճանները ձգտում են թաքցնել անգլո-սաքսոնական երկրների իմպերիալիստական քաղաքականության իսկական ավազակային էությունը։

Երկու հակադիր լագերների՝ իմպերիալիստական և դեմոկրատական լագերների միջև մղվող պայքարը տեղի է ունենում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա սրման, կապիտալիզմի ուժերի թուլացման և սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերի ամրապնդման պայմաններում։

Հետպատերազմյան իրադրության մեջ դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը հանդես են գալիս իբրև գլխավոր խոչնդոտ համաշխարհային նոր պատերազմ հրահրելու գործում։ Նոր պատերազմ սկսելու իմպերիալիստական ցանկությունների և այդպիսի պատերազմի կազմակերպման հնարավորության միջև հսկայական տարածու-

թյուն է ընկած։ Աշխարհի ժողովուրդները պատերազմ չեն ուզում։ Իմպերիալիստական լագերին պատկանող ռազմա-քաղաքական հետախույզների բարձրացրած աղմուկը՝ երրորդ համաշխարհային պատերազմի անխուսափելիության մասին նպատակ ունի վախեցնել թույլ նյարդերի տեր մարդկանց։ Խաղաղությանը կողմնակից ուժերն այնքան ազդեցիկ են ու մեծ, որ եթե այդ ուժերը խաղաղության պաշտպանության գործում լինեն կայուն ու հաստատակամ, եթե նրանք հանդես բերեն տոկունություն ու հետևողականություն, ապա ագրեսորների պլանները անկասկած կխորտակվեն։

Երրորդ համաշխարհային պատերազմ բորբոքելու և աշխարհի վրա իրենց տիրապետությունը հաստատելու ասպարիզում իմպերիալիստների բոլոր փորձերը ձախողման են դատապարտված, որովհետև առաջադիմության ու դեմոկրատիայի շահերի պաշտպանության դիրքում, ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման դիրքում կանգնած է մեծ ու հզոր սոցիալիստական տերությունը — Սովետական Միությունը, որն ահա արդեն 30 տարի է ինչ կայուն ու



հաստատակամորեն պայքարում է հանուն ժողովուրդների խաղաղության և իսկական անվտանգության։

Սովետական բազմազգ ժողովուրդը, իր ամենայն նկատմամբ վստահ, հաստատուն քայլերով առաջ է ընթանում դեպի կոմունիզմը։ Բարոյական-քաղաքական սերտ միասնությամբ նա գնում է դեպի իր իշխանության տեղական օրգանների՝ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները, Սովետներ, որոնք Մեծ Հոկտեմբերի ծնունդն են հանդիսանում։

—— * ——

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 30-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Հոկտեմբերյան Մեծ Ռևոլյուցիայի տարեդարձի առթիվ. Քաղհրատ, Երևան, 1941 թ.։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Հոկտեմբերյան Ռևոլյուցիան և ռուսական կոմունիստների տակտիկան. «Լենինիզմի հարցերը», Երևան, 1940 թ., էջ 102—135։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի միջազգային բնույթը. «Լենինիզմի հարցերը», Երևան, 1940 թ., էջ 220—229։*

*Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի պատմության համառոտ դասընթաց. 7-րդ գլուխ. Երևան, Հայպետհրատ, 1946 թ.։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ Պատերազմի մասին. Հայպետհրատ, 1945 թ.։*

*Ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թվի փետրվարի 9-ին. Հայպետհրատ, Երևան, 1946 թ.։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին. «Լենինիզմի հարցերը». Երևան, 1940 թ., էջ 618—651։*



*ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ Համառոտ կենսագրություն, Երևան, Հայպետհրատ 1947 թ.։*

*Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին. ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումը ընդունված ընկ. ԱՆԴՐԵԵՎԻ զեկուցման առթիվ. «Սովետական Հայաստան», 1947 թ., №№ 50 և 51։*

*Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Ելույթ Գ. Ֆ. Ալեքսանդրովի «Արևմտաեվրոպական փիլիսոփայության պատմություն» գրքի վերաբերյալ կայացած դիսկուսիայում (24 հունիսի 1947 թ.), «Պարտիական կյանք» 1947 թ. № 4, էջ 1։*

*Ընկեր ՎԻՇԻՆՍԿՈՒ ճառը Միավորված Ազգերի կազմակերպության Գլխավոր Ասամբլեյի պլենար նիստում, 1947 թ. սեպտեմբերի 18-ին։ «Սովետական Հայաստան» 1947 թ. №№ 221, 222, 223։*

*Մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության դեկլարացիան միջազգային դրության հարցի շուրջը. «Սովետական Հայաստան» 1947 թ. № 235։*

*«Պրավդայի» հոկտեմբերի 10-ի առաջնորդողը. «Սովետական Հայաստան» 1947 թ. № 239։*

*Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Միջազգային դրության մասին. «Սովետական Հայաստան», 1947 թ. № 250։*

ԳԻՆԸ 1 Ռ.

*Օրենք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին. Երևան, Հայպետհրատ, 1946 թ.։*

*Օրենք Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին, Երևան, Հայպետհրատ, 1946 թ.։*

*Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան (հիմնական օրենք). Երևան, Հայպետհրատ, 1944 թ.։*

*Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների Կանոնադրությունը. «Սովետական Հայաստան», 1947 թ., № 242։*

— ✪ —

Պատ. խմբագրի տեղակալ
Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*ՎՖ 03447 Պատվեր № 1352 Տիրաժ 9600*
*Ստորագրված է տպագրության 28/X 1947 թ.*
*Պոլիգրաֆ և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան*

**Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении**

**Блокнот Агитатора**